1) Հաստատել դրամական հաստատուն պայմաններ, թէ ազգային եւ թէ միջազգային գետնի վրայ :

2) Հաստատել միջազգային գործակցութեան դրութիւն մը, կանխելու համար գիներու ելեւէջները :

3) Դադրեցնել տնտեսական պայքարը՝ ազգերու միջեւ :

4) Աւելցնել հասարակութեան գնելու կարողութիւնը եւ հաստատել ապրուստի գոհացուցիչ մակարդակ մը՝ պարզ աշխատաւորներու համար : Շրջաբերութեան մէջ դնել անշարժացած դրամագլուխները՝ մանաւորապէս ընդունելով հանրօգուտ շինութեանց ընդարձակ ծրագիր մը :

5) Շաբաթական աշխատանքը իջեցնել քառասուն ժամուան :

## ՅՈՒՆԻՍ 15Ի ՊԱՐՏՔԵՐԸ ՊԻՏԻ ՎՃԱՐՈՒԻ՞Ն

Քանի մը օր մնացած է յունիս 15ի պարտքերու վճարման համար, եւ պարտականները իրար անցած են :

Վերջին լուրերու համաձայն, անգլ. կառավարութիւնը յուշագիր մը պիտի ղրկէ նախագահ Րուզվէլթի, պարզելով մանավճարին հատուցման դժուարութիւնները : Եթէ Ամերիկան մերժէ, Անգլիա պիտի կատարէ վճարումը, մասամբ կամ ամբողջովին : Դիւանագիտական բանակցութիւնները կը շարունակուին երկու երկիրներուն միջեւ : Պ. Րուզվէլթ տրամադիր է ո՛ր եւ է վճարում ընդունելու, ինչքան ալ փոքր ըլլայ գումարը, թէ Անգլիոյ եւ թէ Իտալիոյ կողմէ : Կը կարծուի թէ Անգլիան պիտի վճարէ միայն 5 – 6 միլիոն տոլար՝ փոխան 75 միլիոնի : Իտալիան ալ հասկցուցած է թէ չպիտի կրնայ մէկ միլիոնէն աւելի վճարել : Նախագահ Րուզվէլթ կ՚ուզէ որ խորհրդարանը փակուի մինչեւ դեկտ. 10, որպէս զի կարենայ աւելի ազատ շարժիլ :

## ՀԻՆ ՏՈՒՐՔԵՐԸ ԿԸ ՋՆՋՈՒԻՆ ՍՈՒՐԻՈՅ ՄԷՋ

Սուրիական խորհրդարանի անցեալ շաբթուան նիստին բուռն վիճաբանութեան նիւթ դարձաւ յետնեալ տուրքերու յետաձգումի կամ ջնջումի խնդիրը : Բազմաթիւ երեսփոխաններ մասնակցեցան վիճաբանութեանց եւ ի վերջոյ ջախջախիչ մեծամասնութեամբ որոշուեցաւ յետաձգել գանձումը յապաղած տուրքերու, իսկ բոլորովին ջնջել 1927էն առաջուան շրջանի պատկանող տուրքերը :

Ըստ խորհրդարանի այս նոր որոշումին, 1929 – 1932 տարիներու յետնեալ տուրքերը պիտի գանձուին յառաջիկայ հինգ տարուան ժամանակամիջոցին, տարեկան երկու վճարով, մէկը օգոստոս 15ին, իսկ միւսը նոյեմբեր 1ին :

Ճէզիրէի երեսփոխանները սակայն, այս որոշումէն վերջ պահանջեցին որ ջնջուի նաեւ 1931ի ոչխարի տուրքը : Առաջարկը քուէարկութեան կը դրուի, սակայն մեծամասնութիւն չի շահիր : Այս պարագան յուզում կը պատճառէ Ճէզիրէի երեսփոխաններուն, որոնք կը լքեն սրահը ու կը հեռանան :

Խորհրդարանի յաջորդ օրուան նիստին դարձեալ բուռն վիճաբանութիւններ եղան :

⁂ Ինչպէս գրած էինք, Ալէքսանտրէթի ներկայացուցչական խորհուրդը որոշած էր ինքնավար յայտարարել Ալէքսանտրէթի սանճաքը : Երեսփոխան Ապուլ Հատտ էլ Հիւսէյնի այս խնդիրը ներկայացուց խորհրդարանին եւ բացատրութիւն պահանջեց կառավարութենէն :

Անտիոքի երեսփոխան Պ. Մ. Տէր Գալուստեան խօսք առնելով, պաշտպանեց Սանճաքի ինքնավարութեան որոշումը, որուն արգելք հանդիսացած էր կեդրոնական կառավարութիւնը, ինքնագլուխ նշանակելով թղթատարական պաշտօնեայ մը :

Կառավարութիւնը խոստացաւ յաջորդ նիստին պատասխանել եղած հարցադրումին :

## ԼԻԲԱՆԱՆԻ ՄԷՋ ԱԼ ԿԸ ԲԱՇԽՈՒԻՆ ՏՈՒՐՔԵՐԸ

Լիբանանի կառավարութիւնը մասնաւոր որոշմնագիր մը հրատարակեց, որով բոլորովին կը ներուի տասանորդի, թէմէթթիւի եւ կալուածային յետնեալ տուրքերը՝ 1927ին նախորդող շրջաններու :

Ճամբու տուրքերը եւս կը շնորհուին մինչեւ 1930 տարին. որով անոնք որ 1930էն առաջուան շրջաններու ճամբու տուրքերը չեն վճարած, ներումի կ՚արժանանան :

Յ.



Հ. Դ.

### Փարիզ եւ շրջակաները

ՀՐԱՋԴԱՆ խումբի ժողովը այս Երեքշաբթի երեկոյ ժամը 8.30ին, 32, Ավընիւ տէ Կոպլէնի սրճարանին վերնայարկը: Կարեւոր օրակարգ: Պարտաւորիչ ներկայութիւն:

Գաւառ

ՍԷՆ ԺԷՌՕՄԻ (Մարսէյլ) Վրէժ խումբի ընկերները ժողովի կը հրաւիրուին վաղը Երկուշաբթի երեկոյ ժամը 9ին ծանօթ հաւաքատեղին: Խիստ կարեւոր օրակարգ:







## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

— Վարդան Կապուտիկեան (Ռումանիա) կը փնտռէ իր եղբօր՝ Բէմախի Մարեդ գիւղացի Մինաս Կապուտիկեանը եւ անոր երկու զաւակները՝ Յակոբ եւ Սուրէն Կապուտիկեանները: Լուր ունեցողներուն պարգեւ պիտի տրուի եւ կը խնդրուի հաղորդել իրեն Վարդան Կապուտիկեանի, որուն հասցէն է՝ V. Gaboudikian, 5. str. Belveder. Bucarest (Roumanie):


Le Gérant : H. STEPHAN
Imprimerie A. DER (AGOPIAN)
17, Rue Damesme :-: PARIS (13e)




«ՅԱՌԱՋ»Ի ՆՈՐ ԹԵՐԹՕՆԸ (1)

# ԱՀԱԲԵԿԻՉԻ ՄԸ ՕՐԱԳԻՐԸ

Ա. ԳԼՈՒԽ

## ՊԼԵՀՎԷԻ ՄԱՀԱՓՈՐՁԸ

1902 տարուան սկիզբը, վարչական հրամանով աքսորուեցայ Վոլոգդա, այն ամբաստանութեամբ թէ կ'անդամակցէի Սոցիալ-Դեմոկրատ կուսակցութեան Պետերսբուրգի երկու խումբերուն,— Սոցիալիստին եւ Բանուորական Դրօշին: Երկար ատենէ ի վեր, Սոցիալ Դեմոկրատ կուսակցութեան ծրագիրը դադրեր էր ինծի գոհացում տալէ: Ինծի կը թուէր թէ չէր համապատասխաներ ռուսական կեանքին ընկերային պայմաններուն, որովհետեւ լուծում մը չէր տար հողային հարցին: Ասկից զատ, ահաբեկչական եղանակներով պայքարին համար, հակում մը կը զգայի դէպի Նարոդնայա վոլիայի (1) աւանդութիւնը:

Երկու անգամ, 1902ի աշնան եւ 1903ի գարնան, տեկին Բրեշկովսկայա Վոլոգդա եկաւ: Հետը խօսելէ յետոյ, յարեցայ Սոցիալիստ Ռէվոլիւսիոնէր կուսակցութեան, եւ, Գերշունիի(2) ձերբակալութենէն յետոյ (1903 մայիս), որոշեցի մտնել ահաբեկչական կազմակերպութեան մէջ: Նոյն ատեն, նոյն որոշումը տուին իմ երկու ընկերներս, ինչպէս նաեւ մանկութեան բարեկամս Իվան Կալիայեւ(3), որ,

այդ շրջանին, կը գտնուէր Եարոսլաւի մէջ, ուր ոստիկանական մասնաւոր հսկողութեան տակ առնուած էր:

1903 յունիս ամսուն արտասահման փախայ:

Երբ Արխանգելսկ հասայ, պայուսակս կայարանը ձգած՝ ներկայացայ այն հասցէին, որ ինծ տրուած էր Վոլոգդայի մէջ: Կը յուսայի մանրամասն տեղեկութիւններ քաղել թէ ի՛նչպէս եւ ո՛ր նաւով պիտի կարենայի մեկնիլ դէպի Նորվեգիա: Իմացայ, որ, նոյն օրը, մէկ ժամ յետոյ, «Նիկոլա Ա. կայսր» նաւը Արխանգելսկէն կը մեկնէր դէպի Նորվեգիոյ Վարդէ նաւահանգիստը: Ժամանակ չէր մնացած կայարան դառնալու եւ պայուսակս առնելու: Այնպէս որ, առանց անցագրի եւ առանց պայուսակի, նաւամատոյց գացի, եւ, առանց նշմարուելու, սահեցայ երկրորդ կարգի խցիկէ մը ներս:

Հինգերորդ օրը, նաւը մտաւ Բարանգէրի սանտալիրճէն ներս: Երկրորդական պաշտօնեայի մը մօտենալով, ըսի.

— Պեչենգա(4) կ'երթամ, սակայն շատ կը փափաքէի անգամ մը այցելել Վարդէն: Կարելի՞ է:

Պաշտօնեան վրաս նայեցաւ ուշադիր:

— Ի՞նչ գործ կ'ընէք: Ջկնորսութեա՞մբ կը զբաղիք:

— Այո՛, ձկնորսութեամբ:

— Լա՛ւ, ինչո՛ւ չէ, կարելի է այցելել անգամ մը:

— Սակայն խնդիրն այն է որ անցագիր չունիմ արտասահմանի համար:

— Անցագի՞ր, ի՞նչ բանի համար: Գիշերը ցամաք կ'ելլէք, եւ, արշալոյսին, կը վերադառնաք նաւ՝ մեկնելու համար Պեչենգա: Միայն թէ անցատոմս մը գնեցէք:

Յաջորդ օրը երեւցան Վարդէի փարոսները: Նորվեգիացի մաքսի պաշտօնեաները նաւ բարձրացան, իսկ ես առագաստանաւի մը մէջ մտայ: Քառորդ ժամ ետքը, ոտքս կը դնէի Նորվեգեան հողին վրայ: Վարդէէն, Տրոնթհէմի, Քրիստիանիայի եւ Անվերսի վրայով, գացի Ժընեւ, ուր ծանօթացայ Միխայիլ Գոծի(5) հետ: Միջահասակ, տկարակազմ, սեւ մօրուքով, մէկը, որ խօսակիցին վրայ կը յառէր եռանդով եւ երիտասարդութեամբ լեցուն իր աչքերը: Երբ զիս տեսաւ, ըսաւ.

— Ահաբեկչական գործին մէ՞ջ մտնել կ'ուզէք:

— Այո՛:

— Միայն ու միայն ահաբեկչակա՞ն գործին մէջ:

— Այո՛:

— Ինչո՞ւ ոչ կուսակցութեան մէկ ուրիշ կազմակերպական աշխատանքին մէջ:

Իրեն պատասխանեցի թէ վճռական արժէք կուտայի ահաբեկչական գործին, այսուհանդերձ, կեդր. կոմիտէին տրամադրութեան տակ դնելով ինքզինքս ամբողջովին, պատրաստ էի կատարելու կուսակցութեան որ եւ է մէկ հրահանգը:

Գոծ մտիկ կ'ընէր ինծի, ուշադիր: Ի վերջոյ ըսաւ.

— Տակաւին չեմ կրնար ձեզի պատասխան մը տալ: Համբերեցէք: Մինչ այդ, մնացէք Ժընեւի մէջ:

Ժընեւի մէջ ծանօթութիւն հաստատեցի Բլինովի(6) եւ Պոկոտիլովի հետ: Գիտէի թէ երկուքն ալ նախկին ուսանողներ էին Կիեւի համալսարանին, բայց տեղեկութիւն չունէի թէ անդամ են Կռւի Մարմնին: 1901ի յունուարին անգամ մը տեսած էի Պոկոտիլովը Պետերսբուրգի մէջ:

Բ. ՍԱՎԻՆԿՈՎ

(Շարունակելի)

(1) Կը նշանակէ Ժողովուրդին ազատութիւնը: Անուն է յեղափոխական կուսակցութեան մը, որ կը գործէր ահաբեկչութեամբ: Իր գործադրած ահաբեկումներէն յիշենք Ալեքսանդր Բ.ի մահափորձը (1 մարտ 1881):

(2) Նշանաւոր յեղափոխական, որ մեռաւ Ժընեւի մէջ, 1907ին:

(3) Նշանաւոր յեղափոխական, որ, 1905ին, սպաննելէ յետոյ մեծ-դուքս Սէրգէյը, Նիկոլա Բ.ի հօրեղբայրը, կախուեցաւ:

(4) Նորվեգեան սահմանագլուխը չհասած, ռուսական վերջին նաւահանգիստը:

(5) Նշանաւոր յեղափոխական, մէկը Սոցիալիստ Ռէվոլիւսիոնէր կուսակցութեան հիմնադիրներէն: Իր քաղաքական գործունէութիւններուն պատճառով, թիապարտ ղրկուեցաւ, 15 տարի թիարան մնաց, յետոյ անցաւ Ֆրանսա եւ մեռաւ Նիսի մէջ 1906ին:

(6) Սպաննուեցաւ Ժիտոմիրի մէջ 1905ին, պաշտպանելու ատեն Հրեաները, ջարդի պահուն:

Le Gérant : H. STEPHAN
17, Rue Damesme :-: PARIS (13e)
Imprimerie A. DER (AGOPIAN)

